# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

Ա. ՏԱՐԻ, ԹԻՒ 2. ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ., ՓԵՏՐՈՒԱՐ, 1918 ԳԻՆ ՏԱՍԸ ՍԷՆԹ




ՎԵՀԱՓԱՌ ՄԱՏԹԷՈՍ Բ. ԻԶՄԻՐԼԵԱՆ Կաթողիկոս Ամենայն Հայոց
(1845—1911)

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅՈՒՆ ԿՏԱԿԸ

Կտակ կոչուի հնուց ի վեր, ամեն ազգերու մէջ, ընդհանրացած այն սովորութեան կամ գործողութեան, որով մէկը իր ստացուածքը կըրնայ թողուլ, ի կենդանութեան կամ յետ մահուան, որու որ կամի, և որուն ոչ ոք կրնայ արգելք ըլլալ։ Ըստ այսմ, մէկը իր ինչքը կրնայ թողուլ, կտակել իր պարագաներուն, իր պատկանած ազգին, եկեղեցիի մը, դպրոցի մը, վանքի մը, հիւանդանոցի մը, վերջապէս որ և իցէ բարենպատակ հաստատութեան մը կամ ընկերութեան մը։ Մեր վանքերու, եկեղեցիներու և Հ. Բ. Ը. Միութեան հարստութեան մեծագոյն մասը կտակներու արդիւնք են։ Գերազանցօրէն բարի սովորութիւն մըն էր ասիկա՝ մեր երկրին մէջ յաճախ գործադրուած. բայց ասկաւին Ամերիկահայոցս մէջ գրեթէ գոյութիւն չունի։

Թէ Ս. Գրոց և թէ ազգային պատմութեան մէջ կտակն երկու կերպ աւանդուած է. կամ իբր պատուէր մը բարոյական և կամ իբր հարստութիւն մը նիւթական։ Բարոյական կտակը, որ կրնայ ըլլալ ցեղային անկախութիւնը պահպանելու նախանձախնդրութեամբ՝ պատուէրով մը, օրհնութիւնով մը, կամ անէծքով մը, յաճախ կ'երեւի Ս. Գրոց մէջ։ Աբրահամ իր Իսահակ որդւոյն ամուսնութեան նկատմամբ իր հաւատարիմ ծառային խօսք կը պատուիրէ՝ անպատճառ Քանանու երկրին աղջիկներէն ընտրութիւն ընել։ Նոյնպէս Իսահակ, իր կարգին, կը պատուիրէ իր Յակոբ զաւկին՝ մօրենական ազգականներէն ընտրել իրեն ամուսին։ Գերազանց է Յովսէփին կտակը։ Եգիպտոսի մէջ, իր մահուան անկողնոյն մէջ, վերջին օրհնութիւն տալու պահուն կը խնդրէր իր պարագաներէն, որ՝ «Երբ Տէր Աստուած այցելէ Իսրայէլի ժողովուրդը Եգիպտոսէն, իմ ոսկորներս ալ հանեցէք և տարէք թաղեցէք իմ Հայրենի հողերուն մէջ, իմ նախահարցս շիրիմներուն քով»։ Նշանաւոր էր նաև Մովսէսի կտակը, որ անապատին մէջ աւանդեց բոլոր Իսրայէլի ժողովուրդին։ Այս կտակով ան կ'աւանդէր անոնց միայն Աստուծոյ օրէնքներն ու պատուիրանները։ Երկնից օրհնութիւնները օրինապահներուն համար, իսկ անէծք և նզովք պատուիրազանցներու գլխին։

Բարոյական կտակներուն վսեմագոյնը և գրաւչելին, ամենէն ճոխը և տիեզերականը, աւանդուած է Յիսուս, երկու բառով միայն՝ «Սիրեցէք մէկզմէկ»։ Նահապետներէն ու մարգարէներէն աւանդուածներուն նման խորական ոգի չի կայ անոր մէջ։ Համաշխարհային եղբայրութեան և Աստուծոյ հայրութեան գաղափարականը. ահա ինչ որ ուզեց խտացնել Քրիստոս «Սիրեցէք զմիմեանս» երկու բառ բաղկացեալ կտակին մէջ։ Առհասարակ մարդկային կեանքին մէջ տեւական ներդաշնակութիւն մը այդ կտակի գործադրութենէն կախում պիտի ունենար։ Կտակ ընդունողները պարտին հաւատարիմ գործադիրներն ըլլալ իրենց ընդունած կտակին։ Հետեւաբար Ս. Գրոց, եկեղեցւոյ և ազգային պատմութեան մէջ, առաջնորդող և հեղինակաւոր անհատներ ու ժողովներ ինչ որ կտակեր են մեզի պարտաւոր ենք անեղծ և անվթար պահել և գործադրել։

Ինչ որ է անհատի և ընտանիքներու համար, նոյնն է նաև ազգերու համար։ Մէն մի ազգ կամ ցեղ իր գոյութիւնը կը մշտնջենաւորէ իբր նուիրական կտակ՝ պահելով իր նախնեաց լեզուն, երկիրը, հաւատքը և ամեն սովորութիւնները, ու երբ ասոնց դէմ վտանգ մը տեսնէ՝ կը պաշտպանէ զանոնք, նոյն իսկ զոհելով իր կեանքը։

Մենք Ամերիկահայերս ալ ունինք մեր նախնիքներէն ընդունած կտակներ. լեզու, պատմութիւն, եկեղեցի են։ Ասոնց վրայ եկան աւելցան հիմայ մոխրակոյտի վերածուած հայրենիք մը և կոտորածներէ ու տարագրութիւններէ մնացած մարդկային բեկորներ։ Ամերիկահայութեան համար նոր՝ յաւելուածական կտակ մըն է ան ալ։ Եթէ ազգային հարստութիւն մը, եթէ փրկուած հայրենիք մը ըլլար ան, ո՜հ, ինչ ուրախութեամբ պիտի ընդունէինք զանիկա։ Եւ սակայն ի՜նչ կը խորհի Ամերիկահայութիւնը իրեն նոր կտակուած այդ քանդուած Հայրենիքին և եղկելի ցեղային մնացորդներուն վրայ, որոնցմէ շատեր բշուած են Միջագետքի ու Պաղեստինի աւազոտ ու անջրդի անապատներու մէջ. մեծ մաս մը Կովկաս ու փոքր մաս մ'ալ Եգիպտոս ապաստանած, մերկ ու անպատսպար, կարօտ պատառ մը չոր հացի։ Երբ մենք հանգստաւէտ անկողինի մէջ կը ննջենք խաղաղ, սառ ձիւն է անոնց անկողինը։ Ընդունինք որ մեզի կտակուած են անոնք, մենք միայն կրնանք ստանձնել անոնց հոգը և պարենաւորել զանոնք։ Այդ երկրի ջրհեղեղէն փրկուած Նոյեր, Սոդոմի Գոմորի կրակներէն ազատուած Ղովտեր, Քանանու երկրին մեծ սովէն հրաշիւք իմն ապրուած Յովսէփներ են մենք։ Ընդունինք Աստուծոյ կատարած այս խորհրդաւոր անօրինութիւնը

ու ճանչնանք մեզի եղած շնորհքը. այնատեն պիտի համոզուինք թէ ինչ սրբազան պարտականութիւններ ունինք մենք կատարելիք, որմէ խուսափիլը ոճիր է:

Այնքան գազանօրէն մորթոտուած Հայութեան մնացորդները, միջոց մը, Ամերիկայ փոխադրել խորհեցան այս երկրի հարուստներէն ոմանք, որ չի գործադրուեցաւ: Սակայն մենք Հայերս շատ դիւրութեամբ Հայութեան գաղափարականը, Հայաստանի ոգին կրնանք փոխադրել հոս: Քիչ մը կամք, քիչ մըն ալ ազգայնականութեան զգացում բաւական պիտի ըլլային մեզի այդ բանին համար: Կովկասի և Եգիպտոսի մէջ ունինք մենք տակաւին շատ Հայեր: Եւ Ամերիկահայ գաղութն է միայն որ կրնայ անոնց ցաւը ըմբռնել իր իրականութեան մէջ և օգնութեան ձեռք կարկառել, վասն զի այս գաղութն ալ ծագում առած է նոյն թրքական հալածանքէն, նոյն զուլումէն: Այսօրուան մեռած Հայաստանին շունչ ու կենդանութիւն տուողը այս գաղութը միայն կրնայ ըլլալ: Ամերիկահայութեան այն նպատակաւ բրած շարժումին մէջ ուրիշ հոգեբանական կէտ մըն ալ կայ որ կ'արժէ շեշտել: Այդ շարժումները պատճառ պիտի ըլլան, որ այս գաղթականութիւնը իր ցեղային զգացումներով աւելի երկարատև կեանք ունենայ և նորահաս սերունդն ալ նոյն շաւղին հետևելով, զերծ մնայ ձուլումի և տարրացման վտանգէն:

Պէտք է ըմբռնել թէ, առանց Ամերիկահայութեան չի կայ Հայ և Հայաստան: Եթէ Ամերիկահայը յընթացս ժամանակի տարրանայ և մոռնայ իրեն աւանդուած կտակին գործադրութիւնը, իր լեզուն, իր հաւատքը, իր Հայրենիքը և ձուլուելով այս մեծ ձուլարանին մէջ՝ մեռնի բարոյապէս, այդ պիտի ըլլայ Հայութեան սրտին մեծագոյն հարուածը:

Այսքան խորհրդածութիւնը մեր նախնիքներէն մեզի թողուած կտակի և անոր գործադրութեան մասին էր: Հապա դուք, Ամերիկայի մէջ ապրող բազմաւոր Հայեր, ինչ կտակ պիտի թողուք ձեր յաջորդներուն, ձեր զաւակներուն ու թոռներուն: Մեր Հայրենիքին ու ցեղին վերականգնումը ձեզմով պիտի ըլլայ. ատոր տարակոյս չկայ: Մենք բոլորս ալ մեր ազգային տառապանքէն ուղղակի կամ անուղղակի մասամբ ճաշակած ըլլալով՝ մենք միայն կրնանք իրապէս զգալ անոր տառապակութիւնը: Սակայն մեր յաջորդները պիտի զգա՞ն մեր զգացածը. անոնք ալ պիտի ճանչնա՞ն ու սիրե՞ն՝ սիրոյ կարեկցութեան ու օգնութեան կարօտ իրենց ցեղն ու Հայրենիքը: Այս կենսական հարցերուն որ և է մխիթարական պատասխան չունինք դժբախտաբար: Հոս է որ ահա իմ մտքիս մէջ կը ծագի բարոյական կտակի այն մեծ ու կարևոր խնդիրը, որ սոյն խորհրդածութեանս հոգին է, և կուզեմ որ ձեր մտքերուն մէջ անջնջելի կերպով տպաւորուի: Ձեր շարաշար աշխատութեան արդիւնքները, կալուած կամ դրամ օր մը անշուշտ պիտի մնան ձեր զաւակներուն,: Նիւթականին մէջ բնական կտակներ են ասոնք, որոնցմէ ձեր վանքերուն ու եկեղեցիներուն բաժին հանելու պատեհութիւն չունիք հոս: Ընդունեցէք նաև, որ ձեր հայրենի բարեպաշտութիւնէն, հաւատքէն ու զգացումներէն ալ շատ բան պակսած ըլլալուն հետևանքն է ան: Ձեր զաւակներն ու թոռները այս երկրին մէջ ձեզմէ շատ աւելի դիւրութեամբ և առատ հարստութիւն կրնան դիզել. կարևորը անոնց թողելիք ձեր բարոյական կտակն է: Ուստի խիստ պատուէր տուէք անոնց որ երբ մեծնան, իրենց յաջողութեան օրերուն մէջ չի մոռնան Հայն ու Հայաստանը ու մանաւանդ Եկեղեցին Հայաստանեայց: Կտակեցէք անոնց ձեր հաւատութիւնը, պայմանաւ որ բաժին հանեն անկէց միշտ այս դժբաղդ ազգին, ինչպէս որ դուք կ'ընէք ու պիտի ընէք, որքան ատեն որ ողջ ըլլաք: Պատուիրեցէք անոնց չի մոռնալ Հայոց լեզուն, Հայոց պատմութիւնը, սովորութիւնները: Իւրաքանչիւրիդ տունը մէյ մէկ աշխարհացոյց քարտէզ կախուած լինի պատէն, որուն վրայ մեծ գրերով գրուած ըլլայ մեր Հայրենիքին անունը, Արմէնիա կամ Հայաստան բառերը: Ամենախիստ կերպով պատուիրեցէք ձեր զաւակներուն չ'ամուսնանալ օտարի հետ. հակառակ պարագային նզովեցէք ու զրկեցէք զիրենք ձեր ժառանգութենէն: Ո՛հ, Հայրենասիրական ինչ գեղեցիկ կտակ է Յովսէփինը Ս. Գրոց մէջ: Ան՝ հետևելով իր հօրը օրինակին՝ խօսքը կը պատուիրէ իր շառաւիղներուն, թէ «Երբ Աստուած գայ ազատէ Եգիպտոսէն ու տանի դէպի մեր ցանկալի Քանանը, իմ ոսկորներս ալ գերեզմանէն հանելով տարէք հետերնիդ»: Ներկայ ժամանակիս մէջ այդ տեսակ կտակ մը գործնական չէ անշուշտ, բայց դուք կրնաք պատուիրել որ ձեր նշխարներուն տեղ տանին հայկական հարազատ զգացումներ, ձեռքի և մտքի ճարտարութիւններ, վրէժխնդրական արդար ոգիներ:

Եւ դուք, թանկագին Հայ երիտասարդներ,

և օրիորդներ, իմ ալ կտակս ա՛յս թող ըլլայ ձեզի. —Պինդ պահեցէք ձեր հայրերուն հաւատքը, և անմեղ աւանդութիւնները. մի՛ մոռնաք Հայոց աշխարհը, մի՛ մոռնաք Արարատը, մի մոռնաք Եփրատն ու Տիգրիսը, Էջմիածինն ու Կիլիկիան: Մի՛, մի մոռնաք Հայոց գիրն ու լեզուն: Իսահակայ և Յակոբայ բարի նախանձախնդրութիւնը ունեցէք և մի՛ երբեք ամուսնանաք օտարի հետ: Երբ օտարի հետ կ'ամուսնանաք, դուք կ'օտարանաք և նոյն իսկ դժբաղդ կըլլաք, ձեզմով ա՛լ աւելի դժբաղդ կըլլայ արդէն իսկ թշուառ այս ազգը:

Ա՛յս պէտք է ըլլայ ահա այն կտակը զոր Ամերիկահայ ծնողքներ՝ մեծ իմաստութեամբ ու հեռատեսութեամբ՝ պարտին աւանդել իրենց զաւակներուն

Վ. Վ.

## ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐՈՒ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ

Գեր. Տ. Բաբգէն Եպիսկոպոսի ջանքերով, կազմուած է յանձնախումբ մը, որ մշակած է ծրագիր մը Ամերիկայի մէջ Հայ եկեղեցականներ պատրաստելու համար, մօտաւոր ապագային մէջ վերածնելի Հայրենիքին ալ օգտակար ըլլալու իմաստուն հեռատեսութեամբ:

Այս ձեռնարկը ծանուցանող պաշտօնական շրջաբերական մը, նոյն յանձնախմբին կողմանէ հրատարակուեցաւ Հայ թերթերէ ոմանց մէջ: Մենք ալ կը փափաքէինք հրատարակել զայն և մեր կողմանէ ալ համակրական տեսութիւն մը ընելով՝ շեշտել ձեռնարկին կարևորութիւնը՝ եթէ «Էջմիածին»ի էջերը շատ անձուկ չըլլային: Ուստի կը բաւականանանք «Տաւրոս»ի երկրորդ թուոյն մէջ այդ նպատակով գրուած խմբագրականը արտատպել հոս, որով մեր ընթերցողները շատ աւելի որոշ կերպով պարզուած են, նկատի ունենալով մանաւանդ սա պարագան, որ «Տաւրոս»ն ալ նոր թերթ մը ըլլալով այս կողմերը դեռ շատ տարածուած չէ:

«Տաւրոս»ի այս թիւին մէջ մեր ընթերցողները կը տեսնեն պաշտօնական յայտարարութիւն եւ կոչ մը, որ կ'ուղղուի Հայ երիտասարդներու: Խնդիրը Հայ եկեղեցականներու պատրաստութեան վրայ է: Հայ բնաշխարհին եկեղեցականները իրենց ժողովուրդի ծոցին մէջ մինչեւ հալածանքին զոհ գացին: Վաղը՝ Հայութիւնը պէտք ունի նոր եկեղեցականներու: Այս եկեղեցականները հարկ է, որ ըլլան պատրաստուած. այսինքն՝ իրենց մտաւոր կարողութեամբ և յօժարութեամբ կրթուած, մարզուած պատրա՛ստ իրենց վաղուան փափուկ ծառայութիւնը ի գլուխ հանելու:

Նոր Երկրի մէջ ծանօթ ազգայիններէ ոմանք գլուխ կանգնած են այս շարժման, կազմած են Խնամակալութիւն մը, ապահոված են գործին դրամական մասը, համաձայնած են աստուածաբանական բարձրագոյն հաստատութեանց հետ, ևն. և այս բոլոր աշխատութիւնները առանց աղմուկի կատարուելէ ետքը, հրապարակ եկած են և կոչ կ'ընեն Ամերիկայի հայ երիտասարդութեան, որպէսզի անոնք, որ կ'ըղձան Հայաստանեայց Եկեղեցւոյ մէջ ծառայել իրենց ազգին վերաշինութեան, հրամմեն գան, օգտուին իրենց ընծայուած այս բարեդէպ առիթէն:

«Տաւրոս» ջերմապէս կը գնահատէ այս թանկագին ձեռնարկութիւնը և թէ թիկունք կը կանգնի այսպիսի գեղեցիկ շարժման մը. վասն զի այս շարժումը լիովին օգտակար է, և կ'արժէ քաջալերել զայն դրապէս: Գործին ամենէն հմայիչ կողմերէն մէկն է հայերէն դաստիարակութեան հաստատութիւնը ամերիկեան բարձրագոյն հաստատութեան մէջ: Հայ եկեղեցականի մը համար բաւական չէ օտար հաստատութեան մը մէջ ուսանիլ, ուսումնասիրել պատրաստուիլ և նոյն իսկ զովեստ իսկ վկայուիլ, եթէ այս եկեղեցականը պէտք եղածին պէս չգիտեր Հայաստանեայց Եկեղեցւոյ լեզուն, դրականութիւնը, դաւանութիւնը, կարգն ու կանոնը, մէկ խօսքով՝ եթէ չհայանար կամ չհայացներ իր ուսածները և չպատշաճեցներ ինքզինքը այն միջավայրի պայմաններուն, որոնց մէջ պիտի աշխատի և պիտի ծառայէ:

Եւ պէտք է գիտնալ տալ, որ մեր մէջ հայագիտութիւնը, այս բացատրութեան ընդհանուր առումով պակաս է և հետզհետէ կը պակսի: Ինչպէս հայ ուսուցչի, մանաւանդ նոյնպէս հայ եկեղեցականի համար անհրաժեշտ պայման մըն է քաջ գիտնալ դասական և արդիական լեզուները, Հայաստանեայց Եկեղեցւոյն հայացիութեան պայմանները՝ տարր պատմութեան եարգի կեանքին մէջ: Եւ գիտնալ այս բոլորը բոտ կարելւոյն, կը նշանակէ ուսումնասիրած ըլլալ Հայ Ազգին պատմութիւնը, իր բոլոր կողմերով: Եւ ասիկա ամենէն անզիմադրելի հմայք մը պիտի ունենայ անոնց համար, որ կ'ուզեն սրբազան ծառայութեան նուիրուիլ Հայց. Եկեղեցւոյ մէջ:

Գործին ամենէն գործնական և նոյնքան հմայիչ կողմերէ մին է նաև, ազատ կեանքի բնորու

թիւնը։ Խնամակալութիւնը պարտաւորիչ չըներ ամուրի եկեղեցականութիւնը։ Ան ազատ կը թողու թեկնածուները իրենց կեանքի ընտրութեան մէջ, և նոյն իսկ կը քաջալերէ ամուսնացեալ եկեղեցականութիւնը, քանի որ ամուսնացեալ թեկնածուներու իսկ կոչ կ'ընէ և հնարաւոր եղած ամէն դիւրութիւն կ'ընծայէ անոնց ալ պատրաստութեան։ Խնամակալութեան միակ պայմանն է անձնանուիրութիւն։ Բոլոր թեկնածուներ նուիրեալ պիտի ըլլան։ Այս պիտի ըլլայ իրենց պատրաստութեան հիմունքը, և պիտի նուիրուին Ս. Սահակի և Ս. Մեսրոպի անուան, ծառայելու համար անոնց ծառայութիւնը, անշուշտ իրենց չափով ու կարողութեամբ։

Մենք վստահ ենք որ, վաղուան հայ եկեղեցականին արժանիքը պիտի գնահատուի իր նուիրումէն, իր ծառայելու ոգիէն, իր աշխատութեան արդիւնաւորութենէն և ո՛չ թէ իր ամուրի կամ կանամբի ըլլալէն։ Եւ ծառայութեան այս չափանիշն (սթէնտըրտ) է, որ պիտի ճշդրտէ անոնց աստիճանները։ Բայց լաւ է յաւէտ առաքելական ողջմտութիւնը, որով կը յանձնարարուի Աւետարանի պաշտօնէին համար ամուսնանալ քան ջեռնուլ։

Շատեր, շատեր կը գանգատին Հայց. Եկեղեցւոյ պաշտօնեաներու շատերուն ագիտութենէն, անպատրաստութենէն։ Ահա՛ գեղեցիկ, գործնական շարժում մը։ Ամէն բան պատրաստ է։ Քանի՞ նուիրեալ հոգիներ պիտի փութան արձանագրել տալ իրենց անունները. քանի՞ երիտասարդ դուրս պիտի գան Ամերիկայի հայոց գաղթային խոշոր զանգուածէն և պիտի պատրաստուին առանց մտահոգ ըլլալու, իրենց ծախքերուն ու պէտքերուն մասին, Հայց. Եկեղեցւոյ մէջ աշխատելու և ծառայելու համար։

Երանի՜ թէ ոչ թէ հինգ, այլ տասը անգամ հինգ նուիրեալներ փութային պատասխանել Նիւ Եորքի Խնամակալութեան կոչին՝ պահանջուած պայմաններով։



## ՍՈՒՐԲ ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԸ

Ս. Ծննդեան տօնը արտասովոր խանդավառութեամբ հանդիսաւորուեցաւ այս տարի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ մէջ։ Ճրագալոյցի երեկոյին, Շաբաթ և Կիրակի օրեր գաղութիս բոլոր ժողովուրդը ներկայ եղաւ։ Նշմարելի էին նոյն իսկ օտարականներ, Ամերիկացիներ։ Բարձրագոյն դպրոցի նուագածութեան ուսուցչուհի՝ Օր. Քօլըփ, ներկայ եղաւ ցվերջ, ու խորին պատկառանօք ունկնդրեց Հայ Եկեղեցւոյ երաժշտութիւնը և իր հիացումը յայտնեց։ Շաբաթ առաւօտ, հովիւ և ժողովուրդ, բարեպաշտութեան միջոցին անգամ մը ևս փղձկեցան՝ պատկերացնելով իրենց առջև Հայրենիքի բնաջնջուած եկեղեցական իշխանութիւնները, Պատրիարքութիւնները և առաջնորդութիւնները քանդուած, կողոպտուած և պղծուած եկեղեցիները, որոնք դադրած էին այլ ևս «Խորհուրդ մեծ և սքանչելի»ն, «Փառք ի Բարձունս Աստուծոյ»ն արձագանգել իրենց խնկաբոյր կամարներուն տակ։ Հաղորդուեցան բազմաթիւ բարեպաշտներ։ Շատ ազդեցիկ էր դպրաց դասու և դպրոցի աշակերտաց՝ առանց բացառութեան՝ մերձենալը Ս. Հաղորդութեան, որոնք 2 հարիւրի չափ էին։ Եկեղեցւոյս հովիւը Կիրակի առաւօտ խօսեցաւ աւուր պատշաճի քարոզ մը, որոյ բնաբանն էր. «Աստուած մարդացաւ, որպէս զի մարդիկ Աստուածանան», Եկեղեցւոյ հայրերէն Ս. Աթանասի խօսքը։

«Էջմիածին» արձանագրելով այս գնահատելի հոգեոր շարժումը, կը յանձնարարէ գաղութիս Հայ Եկեղեցւոյ բոլոր զաւակներուն, ամէն Կիրակի ներկայ ըլլալ հոգեոր պաշտամանց։



—Արժ. Տ. Մելքիսեդեկ Ա. Քահանայ Տէր Մկրտիչեան, որ վերջերս Կովկասէն ժամանեց Քալիֆօրնիա, Ս. Ծննդեան Տօնին առթիւ Եգեմ հրաւիրուած ըլլալով, հոգեպարար մխիթարեց տեղւոյն ժողովուրդը։



## ԵԿԵՂԵՑԱՍԷՐ ԵՒ ՈՐԲԱԽՆԱՄ ՏԻԿՆԱՆՑ

### Միացեալ Ներկայացումը

Քաղաքիս Եկեղեցասէր և Որբախնամ Տիկնանց ընկերութիւնները, իբր փորձ միութեան և համերաշխութեան, նախընծայ պատեհ մը վայլել տալու մեր ժողովուրդին, իրենց ընկերութեան ի նպաստ տարեկան ներկայացումները միացնելով այս տարի և երկուքին հաշւոյն մէկ ներկայացում միայն տալով, որուն բարոյական ազդեցութիւնը նիւթական առաւելութեան հետ պերճախօս ապացոյց մըն է, որ եթէ այդ երկու ընկերութիւնները՝ բարեփոխուած ու կշռուած կանո-

նագրով մը՝ միանան, շատ աւելի յառաջդիմութիւն պիտի ունենան իրենց որդեգրած նպատակներուն մէջ։ Ու ներկայիս մէջ մանաւանդ միութենէ աւելի գեղեցիկ ու օգտակար ի՞նչ կայ աշխարհի վրայ։ Բաժնէ որ տիրես, քայքայես. միացիր որ շինես, զօրանաս։ Այս է ժամանակիս պատգամը։

Արդարև շնորհաւորութեան արժանի էր Տիկին Գիւթրիս Նշկեան, որ իր պատրաստած «Վրէժ» գործը ներկայացնելու համար՝ երկու ընկերութեանց տրամադրելի ընելով, միութեան գործնական դաս մը և օգտակարութեան յիշատակելի ապացոյց մը տուած եղաւ։

Շնորհաւորելով երկու ընկերութեանց բարի տիկնանց՝ միութեան համար բրած այն մասնակի փորձը, կը մաղթենք իրենց համար ընդհանուր և տևական միութիւն մը մերձաւոր ապագայի մէջ։



## ՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԱՐՏԱՅԱՅՏՈՒԹԻՒՆՆԵՐ

Գեր. Ս. Հայր,

Անձկանօք կըսպասէինք ձեր Հայրութեան կողմանէ հրատարակելի Կրօնա-Բարոյական պարբերականին։ Վերջապէս այսօր բաղդը ունեցանք կարդալու «Էջմիածին»ը, որ թէև ծաւալով փոքր է պարունակութեամբ հակիրճ, բայց նպատակաւ բարձր և ծրագրաւ ալ յոյժ օգտակար ըլլալ կը խոստանայ։ Կը գտնուինք այնպիսի միջավայրի մը մէջ, ուր կրօնական բազմաթիւ յարանուանութիւններ, ազգի ազգի պարբերականներով յառաջ կը տանին իրենց գիտումնաւոր բրօբականտան։ Իրաց այս կացութեան առջև անշուշտ չի պիտի զարմանանք երբ լսենք կամ տեսնենք որ գտնուին այնպիսի միամիտներ որոնք անհիմն առարկութիւններով ուրանան ու հեռանան Մայրենի իր Եկեղեցիէն, և տարուին մարդորսներու հոսանքէն։ Սակայն հովէն քշուող տերևներ երբեք չեն կարող վնասել մայր ծառին։ Ի՜նչ թանկագին ժամանակ էր որ վատնեց ու կը վատնէ դեռ Ամերիկահայ եկեղեցականութիւնը, արևելեան նահանգներու մէջ, աթոռի պայքար մղելով ու չի խորհեցաւ «Էջմիածին»ի նման կենսական հրատարակութեան մը վրայ։ Ու զուք երբ ձեր հովուական արդէն ծանրաբեռն զբաղումներուն մէջ, յանկարծ «Էջմիածին»ի մը շողերը կը ճառագայթեցնէք մեր վրայ, մենք հոգեկան անպատում հրճուանօք լեցուած, կը շնորհաւորենք զձեզ և լիակատար յաջողութիւն կը մաղթենք։ «Էջմիածին»ի հրատարակութեան կոչումը շատ վեհ է և բարձր Ամերիկահայ կեանքի անտարդուանդ դաշտին մէջ։

Ո՛ն, ուրեմն, սիրելի Վարդապետ, շարժեցէ՛ք ձեր գրիչը, գործածեցէք ձեր իմաստութիւնը, նուիրեցէք ձեր բարի սիրտը՝ ի շինութիւն և ի բարեկարգութիւն Հայաստանեայց Առաքելական Ս. Եկեղեցւոյն, և վստահ եղիք թէ անոր զաւակները լիւ ձեզի հետ պիտի ըլլան, ոչ միայն սովորական բարեմաղթութիւններով այլ և գործով ու արդեամբ։

Խորին յարգանքներով,

Հոգևոր Հովիւ Լոս Անճէլըսի
ԱՏՈՄ ՔՀ. ՄԵԼԻՔԵԱՆ

* * *

Սիրելի Հայր Սուրբ.

Ստացայ «Էջմիածին»ը։ Շնորհակալ եմ։ Ներկայ ժամանակներուս մէջ թերթ մը հրատարակելը, այն ալ անձնական ջանքերով ու միջոցներով, բաւական դժուար ձեռնարկ մըն է։ Ուստի կը մաղթեմ յաջողութիւն, որ գործը յարատևութեան շաւղին մէջ իյնայ ու ընթանայ։ Այդ կերպով է միայն, ի հարկէ, որ հրատարակութիւնդ, իբրև Հայ ժողովուրդին մէկ կարևոր պէտքը լեցնելու կոչումն ունեցող ամսաթերթ, պիտի դառնայ աւելի տարածուած ու բովանդակալից։

Սիրով քոյդ՝ Ս. Մ. ԾՈՑԻԿԵԱՆ
Յունվար 16, Ֆրէզնօ

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՄԱՂԹԱՆՔԸ



Օրհնենք, մանկունք, մեր Արարիչ,
Ծունր կրկնենք երկիւղով.
Աղօթք, մրմունջ, խունկ և օրհներգ
Ցերկինս ուղղենք եռանդով։

Թող հաւատով, յուսով, սիրով,
Սուրբ տենչանօք բոցավառ,
Սրտի անկեղծ մաղթանքներով
Ի վեր ուղղենք անդադար։

Տուր մեզ, ո՛վ Տէր, իմաստութիւն,
Շնորհք բարի, միտք բեղուն.
Ցոյց մեզ զառատ քո գթութիւն,
Որ մենք լինենք աննկուն։

* * *

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
## ԼՈՒՐԵՐ ՈՒ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ



### ՀԻՒԱՆԴՆԵՐՈՒ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

*Եկեղեցւոյս հովիւը Յունուար ամսոյ մէջ սուէտ այցելեց հետեւեալ հիւանդներուն ու մխիթարեց զանոնք:*

Գաւառային Հիւանդանոց —

*Մինաս Յակոբեան*
*Վահան Պօղմաճեան*
*Եւնիկէ Գարիբեան*

Փրընէք Հիւանդանոց

*Տաւուս Գէորգեան*
*Զարմայր Շէհրիեան*
*Յարութիւն Թօզեան*
*Արտաշէս Մխճեան*

• • •

### ԿԻՐԱԿԻ ՕՐ ՆՆՋԵՑԵԱԼ ՉԻ ԹԱՂՈՒԻՐ

*Ամերիկեան եկեղեցիներ՝ նկատի ունենալով Կիրակի օր ննջեցեալ թաղելու անպատեհութիւնները, համաձայնութեամբ վերցուցած են այդ սովորութիւնը: Մեզի եղած զեկուցման մը վրայ, խոստացած ենք հետեւիլ իրենց, ու յարգելով այդ կարգադրութիւնը ննջեցեալ չի թաղել Կիրակի օր:*

---

Նշանուեցան —

*Կարապետ Մակարեան և Գայիանէ Շաթըրեան*

Ամուսնացան —

*Գէորգ Ղազարեան և Աղաւնի Սարոյեան*

Մկրտուեցան —

*Սարգիս Տաուրեանի երախան՝ Մարգարիտ:*
*Գէորգ Զաքարեանի երախան՝ Դաւիթ:*
*Ղազար Տրմոյեանի երախան՝ Լիթիս:*
*Գարիկ Խօքիգեանի երախան՝ Ալէլ:*
*Սաթենիկ Ուստիկեանի երախան՝ Հէլէն:*

---

### ՊՍԱԿԻ ՀԱՄԱՐ ԱՐԳԻԼԵԱԼ ՕՐԵՐ

1 — *Բոլոր Կիրակիներ:*

2— *Բոլոր Չորեքշաբթի և Շաբաթ օրեր*

3 — *Հինգ Տաղաւարներու երկրորդ օրերը, որք նուիրուած են մեռելոց յիշատակին:*

4 — *Ծննդեան և Աստուածայայտնութեան, Տեառնընդառաջի, Աւետման և Համբարձման տօնի օրերը:*

5 — *Բոլոր Մեծ Պահոց օրերը և Զատկի առաջին Շաբաթը, այսինքն Բուն Բարեկենդանէն մինչև Նոր Կիրակի:*

6 — *Առաջաւորաց, ինչպէս նաև Վարդավառի Վերափոխման, Խաչվերացի, Յիսնակաց և Ծննդեան չորեքշաբթապահոց հինգ օրերը:*

---

### ՊՍԱԿԻ ՀԱՄԱՐ ԹՈՅԼԱՏՐԵԱԼ ՕՐԵՐ

1 — *Ծննդեան Ութօրէքին մէջ, Յունուար* 8-21, 12-25, *հինգ օրեր:*

2 — *Յունվար* 14-27*էն մինչև Առաջաւորաց Բարեկենդանը:*

3 — *Առաջաւորաց Շաբաթ օրէն մինչև Բուն Բարեկենդան:*

4— *Յինանց մէջ, Նոր Կիրակի Բշ. էն մինչև Վարդավառի Բարեկենդանը:*

5 — *Վարդավառի Գշ. էն մինչև Աստուածածնի Բարեկենդանը:*

6 — *Աստուածածնի Գշ. էն մինչև Խաչի Բարեկենդանը:*

7 — *Խաչի Գշ. էն մինչև Յիսնակաց Բարեկենդանը:*

8 *Յիսնակաց Բշ. էն մինչև Ծննդեան Բարեկենդանը:*

Ծանօթ — *Եկեղեցական օրերը կ'սկսին արեւու մարը մտնելէն ետքը. հետեւաբար՝ Կիրակի երեկոները կարելի է պսակ ընել, եթէ յաջորդ օրը ներելի է պսակի համար:*

---

### ՏՕՆԱՑՈՅՑ

Փետրվար

3 — *Կիր. Գ2 — Երդ զկնի Ծննդեան:*

9 — *Շբ. Գ2 — Տօն Սրբոց Հայրապետացն Աթանասի, Կիւրղի և Գրիգորի Աստուածաբանին:*

10 — *Կիր. Գ4. — Գրդ զկնի Ծննդեան:*

16 — *Շբ. Բ4 — Տօն Սրբոցն Որդւոց և Թոռանց Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ՝ Արիստակէսի, Վրթանէսի, Գրիգորիսի և Դանիէլի:*

17 — *Կիր. Գ2 — Դրդ զկնի Ծննդեան:*

23 — *Շբ. Ա4 — Տօն Սրբոյն Թադէոսի Առաքելոյն և Սանդխտոյ Կուսին:*

24 — *Կիր. Բ4 — Երդ զկնի Ծննդեան:*

27 — *Դշ. Գ2 — Պահք:* Տեառնընդառաջ, *Տօն քառասնօրեայ գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ի Տաճարն:*

## Ս. ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԿԱՐԳԵՐԸ

Կիրակի առաւօտ —

| | Ժամեր |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն Ժամերգութեան* | 9 |
| *Սկզբնաւորութիւն Պատարագի* | 10·30 |

Պատարագ չեղած կիրակիներ —

| | |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն Ժամերգութեան* | 10 |
| *Քարոզը մօտաւորապէս* | 11·30 |

Կիրակնօրեայ Դպրոց —

| | |
|---|---|
| *Սկզբնաւորութիւն դասախօսութեանց* | 9·30 |
| *Վերջ դասախօսութեանց* | 10·30 |

Ծնթ. — *Կիրակնօրեայ Դպրոց կը յաճախեն 150է աւելի երկսեռ աշակերտներ, որոնց կը դասախօսեն տասը ուսուցիչներ, որոնք աշակերտաց հետ միասին միշտ ներկայ կըլլան եկեղեցական պաշտամանց։*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԴՊՐՈՑ

*Հայ դպրոցը բաց է ամեն օր կէսօրէ վերջ ժամը 2·30է 5, բացի Շաբաթ և Ամերիկեան արձակուրդի օրերէն։ Ուրբաթ օրերը եկեղեցական և ազգային երգեր սորվեցնելու յատկացուած է, իսկ միւս չորս օրերը Հայերէն լեզուի ուսուցման։ Տեսուչ մը և երեք օրիորդներ կը դասախօսեն։ Դպրոցի մուտք տուրքն է մէկ տոլար ամբողջ շըրջանին համար։*

## ԴՊՐԱՑ ԴԱՍ

*Դպրաց Դասուն եկեղեցական և ազգային երգեր կուսուցուին Ուրբաթ երեկոները՝ ժամը 7·30-9։ Այս դասերուն կրնայ աշակերտիլ ամեն Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակ անխտիր, առանց սեռի և տարիքի խտրութեան։*

## ՄԿՐՏՈՒԹԻՒՆ ԵՒ ՊՍԱԿ

*Մկրտութիւն կը կատարուի սովորաբար Շաբաթ օրեր, և բացառիկ պարագաներու տակ՝ կիրակի առաւօտ ժամը 8-ին։ Իսկ պսակները, օրէնքով արգիլուած օրերէն դուրս, որ և է ատեն կրնան ըլլալ։ Բայց զգուշանալու է Շաբաթ երեկոները հարսանիք ընելէ։ Թէ մկրտութեան և թէ պսակի համար Հոգաբարձութեան ու Հովուին կանխաւ լուր տալ անհրաժեշտ է։*

Ուշադրութիւն.— *Վարչական մարմիններ լաւ կրնեն եթէ Կիրակի օրեր ժողովներով չզբաղեցնեն եկեղեցւոյ հովիւը, որպէս զի այցելութիւններ ընէ։*

## Ս. ԵՐՐ. ԵԿԵՂԵՑՒՈՅ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎՈՅ ԴԻՒԱՆ

Տիար ՅԱԿՈԲ Մ. ՆՇԿԵԱՆ՝ Ատենապետ
Տիար ՎԱՀԱՆ ՆՇԿԵԱՆ՝ Ատենադպիր

## ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

*Ներկայ տարւոյ Հոգաբարձութիւնը կազմուած է հետևեալ կերպով.*

Տեարք՝ ՄԻՆԱՍ ԽՕԼԼԻԿԵԱՆ՝ Ատենապետ
ՅԱՐՈՒԹԻՒՆ ՌՈՍՏԻԿԵԱՆ՝ Ատենադպիր
ԱԴԱՄ ՊԵՏՈՅԵԱՆ՝ Գանձապահ
ՄԵԼՔՈՆ ՏԱՎՈՒՐԵԱՆ՝ Անդամ
ՄԱՐՏԻՐՈՍ ՀԱԼԼԱԵԱՆ՝ Անդամ
ՄԱՐԳԱՐ ՇԱՀՊԱԶԵԱՆ՝ Անդամ
ՄԱՄԲՐԷ ԳՈՐԳՄԱԶԵԱՆ՝ Անդամ

Սուրբ Երրորդութիւն Եկեղեցւոյ

## ԵՐԻՏԱՍԱՐԴԱՑ ԳՐԱԴԱՐԱՆԻ ՄԻՈՒԹԻՒՆ

| *Գրադարանը բաց է՝* | Ժամեր |
|---|---|
| Երեքշ. և Հինգշ. երեկոները | 7·30—9·30 |
| Կիրակի օրեր կէս օրէ վերջ | 2—4 |

*Գրադարանի Միութիւնը կըստանայ այժմ 15 ազգային թերթեր, ու500ի չափ մեծ ու փոքր հայերէն գրքեր ունի։*

ԷՋՄԻԱԾԻՆ
Կրօնա-Բարոյական Ամսաթերթ
Հրատարակութիւն՝
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ
Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար
*Նամակ, ծրար ևն. ղրկուելու են վարի հասցէով։ Բաժանորդագինը կանխիկ է։*

VOL I, NO. 2, FEB., 1918 PRICE 10 CENTS

ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR